1917 № 37—ԴԵԿՏԵՄԲ.-ի 31 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ Թիֆլիս, Արասաբաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար համարուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար Թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԱՀԱՒՈՐ ՎՏԱՆԳԻ ԱՌՋԵՒ

Ռուսական մեծ յեղափոխութիւնը, իր մեղրամիսը ապրելուց յետոյ, այսօր կործանման է առաջնորդւում:

Այն լուսատու արևը, որ ռուս յեղափոխականները վառեցին լայնածաւալ պետութեան երկնակամարին, որով ձգտում էին լոյս տալ, լուսաւորել, յեղափոխութեան կրակովը վառել ամբողջ աշխարհը, այդ արևը դժբաղդաբար մի քանի վախտ ու Թոյլ ճառագայթներ արձակելուց յետոյ, այժմ սկսում է խաւարել և իր հետ խաւարեցնել շատ շատերը, որոնք կամայ թէ ակամայ նրա լոյսին էին ապաւինած:

Մարում է ռուսական արևը, մեռնում են իրար ետևից ոսկեզօծ երազները, աշնանային ցրտից գարնուող տերևների նման, խաւարում է ժողովրդի՝ պատերազմի դաժան ու արիւնոտ հարուածից ուժասպառ ժողովրդի յոյսը, քանդւում են իրար ետևից կուլտուրական ու քաղաքակրթական այն բոլոր գեղեցիկ արժէքները, որոնք շինուել ու կառուցուել էին երկար դարերի ու ծանր աշխատանքի գնով:

Հսկայական պետութեան մէկ ծայրից միւսը ամեն բան խառնուել է իրար, ամեն ինչ տակնուվրայ եղել, մեռել է քաղաքական ոգին, հայրենասիրական հզօր շունչը: Մարդկային յատկութիւններն ու առաքինութիւնները չքացել են, կարծես ամեն մարդ մի մահաբեր ու ժանդ Թոյնով հարբել է ու այդ Թոյնը այնքան է մտել ու խառնուել արեան հետ, որ մաշել ու այլակերպել է նրան:

Ո՞ւր է առաջնորդում մեզ այս մարդկային, հասարակական ու անհատական բոլոր արժէքների խորտակումը: Դէպի ո՞ւր այս անհաշիւ, անգուսպ ու կործանաբար արշաւը...

Ռուսաստանի խորքերում տիրող այլեկոծութիւնից ու ահաւոր անկումներից բարեբաղդաբար մինչև օրս Կովկասը, այդ գեղեցիկ ու բարգաւաճ երկիրը, զերծ էր մնացել: Այստեղի ժողովուրդները ցոյց տուեցին իրենց քաղաքացիական հասունութիւնը, մնացին հանդարտ, բնականոն ու արձագանք չտուեցին այն ահեղ ու քաղաքացիական կռիւներին, որ այս բոպէիս մղւում է Ռուսաստանում, որտեղ երէկուայ խաղաղ ու աշխատասէր քաղաքացին Թողած իր առօրեայ հոգսերը, իր կուլտուրական խաղաղ

աշխատանքը, մի կոյր ու ճակատագրական ուժից մղուելով բազուկ է բարձրացնում իր հարազատ եղբօր դէմ. խմում է նրա արիւնը, կործանում ու գետնաթաւալ անում նրա օջախը, նրա ստացուածքը, առանց մտածելու որ անհեղ թշնամին մինչև ատամները զինուած, պատրաստ կանգնել է իր դրան առջև, հայրենիքի ծոցում և ատամները կրճտացնելով շարունակ առաջ է գալիս անկաշկանդ։

Կովկասեան ժողովուրդները սակայն մինչ օրս պահպանեցին իրենց պաղարիւնութիւնը և մի քանի մանր պատահարները չհաշուած, նրանք մնացին իրենց քաղաքացիական պարտքի ու գիտակցութեան ասպարէզի վրայ։

Մինչև այժմ էլ կովկասեան ճակատը մնաց անփոփոխ, թշնամին՝ որ աւելի ուժասպառուած, ծուատուած ու յոգնած է, չփորձեց կամ չկրցաւ մի բան անել, առաջանալ։ Ռուս զինուորը, որի հետ միացած հայ և վրացի մարտիկները անխափան կատարեցին իրենց հայրենասիրական վսեմ պարտքը, դիմացան պահեցին ճակատը։

Բայց դժբաղդաբար բոլշևիկական կործանարար պրոպագանդան, ինչպէս Ռուսաստանում, այստեղ Կովկասեան ճակատում ևս կատարեց իր սև գործը, տուեց իր դառն պտուղը...

Ռուս զինուորը քաշւում է ճակատից, թողնում է այնքան արիւնով ու զոհաբերութեամբ գրաւուած հողը, կռնակ է դարձնում, գնում է իր տունը։ Ճակատը հետզհետէ մերկանում է, խրամատները դատարկւում. թշնամին քաջ տեղեակ բոլոր այդ իրեն համար խիստ նպաստաւոր անցուդարձերին, տենդային պատրաստութիւններ է տեսնում, կազմաւորում է իր քայքայուած և ուժասպառ բանակը, խիստ պահանջներ է դնում, արհաւիրք է սպառնում Կովկասին...։

Ամբողջ Անդրկովկասը և նրա ազատախոհ ու այլատարր ժողովուրդը գտնւում է ծանրագոյն ու ահաւոր վտանգի առջև։ Անդրկովկասի հանրապետութեան, ժողովուրդների գոյութեան ու ինչքին մեծ հարուած է սպառնում։

Ի՞նչը կարող է փրկել Կովկասի այդ տարերային ու մօտալուտ աղէտից, ի՞նչը կարող է մեր գեղեցիկ հանրապետութիւնը, մեր գեղածիծաղ երկիրը, մեր գոյութիւնն ու քաղաքակրթութիւնը ազատել թշնամու խօլարձակ և աւերիչ արշաւից...։

Միայն մի բան. Կովկասեան բոլոր ժողովուրդների համերաշխութիւնն ու եղբայրութիւնը։

Եթէ Կովկասում—Թիկունքում—անխախտ մնայ յեղափոխական կարգը, ազգերի համերաշխ ոգին, կարելի է լիովին վստահ լինել, որ ճակատից այլևս մեծ վտանգ չկայ, մեր մի բուռն հարազատները, մեր կտրիճները մինչև իրենց արեան վերջին կաթիլը պիտի պաշտպանեն ֆրոնտը և պիտի ազատեն մեզ վերահաս աղէտից։

Ճակատում թշնամու բիրտ ուժին կուրծք տուող մեր հարազատների ոգևորութիւնն ու տոկունութիւնը ձեզանից է կախուած, ձեզանից, ո՜վ Կովկասի ազատ ժողովուրդներ։ Որքան դուք թիկունքում պաղարիւն լինէք, չտարուէք թշնամու լրտեսական ցանցից, նրա սին ու պարապ խոստումներից, պահէք ու պահպանէք համերաշխութեան սրբազան դրօշակը, այնքան ճակատը կը լինի ամուր, երկաթի ու բրոնզի պէս կանգուն և մեր գեղեցիկ, մեր ամենից սիրելի երկիրը ազատ կը լինի ամեն պատուհասից։

Մենք գիտենք, որ դառնութեան ամենամեծ բաժակը պիտի խմի հայ ժողովուրդը, դարեր շարունակ ծուատուող արիւնաքամ և ուժասպառ ժողովուրդը. որ այս համաշխարհային պատերազմի ընթացքին այնքան ծանր զոհեր տուեց, այնքան մեծ արհաւիրքի ենթարկուեց։

Այժմ նոյն այդ ժողովուրդն է ենթակայ մեծ արհաւիրքին, նրա ֆիզիքական գոյութիւնն է դրուած ամենից աւելի զոհասեղանին վրայ...

Հայ ժողովուրդը, ինչպէս միշտ, նոյնպէս և հիմա արիաբար ու անդաւաճան պիտի կատարի իր սրբազան պարտքը՝ հայրենիքի պաշտպանութիւնը։ Հիմի էլ լուռ ու անվրդով պիտի տանի իր ծանր խաչը և պիտի թափի իր զաւակների թանկագին ու կշռուած արիւնը...

Բայց հայ ժողովուրդը ոչինչ չի կարող անել, չի կարող փրկել իր ֆիզիքական գոյութիւնը միայնակ, եթէ երբէք մեր հարևան ազգերը օգնութեան ձեռք չկարկառեն։

Եթէ նրանք չխախտեն եղբայրութեան և համերաշխութեան սրբազան ուխտը։

Վրաց փառապանծ ժողովուրդը, որպէս պատմութեամբ, կրօնքով ու սրտով մեզ հետ նոյնացած ազգ, որ արուեստի մէջ տուել է Ռուսթաւելու նման մեծ դէմքեր, պիտի համերաշխ, եղբայրօրէն մեզ հետ տանէ այն ծանր խաչը. նա ևս մեզ պէս ահաւոր վտանգի առջև է գտնւում, նա ևս ենթակայ պիտի լինի վերահաս աղէտի։

Եւ փորձութիւնը, աղէտը աւելի ևս պիտի մօտիկացնի երկու քոյր ժողովուրդները, աւելի ու աւելի պիտի իրար խառնի նրանց բաբախուն սրտերը։

Մեր հարևան թուրք ժողովուրդը նմանապէս վճռական դեր է խաղալու ներկայ փորձութեան ժամին. Նրա վերաբերմունքից շատ մեծ բան է կախուած. Նա պիտի լինի համերաշխութեան դրօշակակիր Կովկասում և կամ պիտի իր արիւնը խառնի եղբայրասպան դաժան կռուին։

Թուրք ժողովուրդ, դու որ եղբայրօրէն պատերազմի այս չորս տարիների ընթացքում ապրել ես հայ և վրացի ժողովրդի հետ, որ ջանակիրն ես եղել յեղափոխութեան, որ նոյնպէս տանջուել ու հալածուել ես ցարի անարգ բռնակալութիւնից, դու մեծ դեր պիտի կատարես Կով-

կասում, դու պիտի մասնակցես Կովկասի փրկութեան սրբազան գործին. այդ պարտականութիւնը ոչ միայն գնում է եղբայրութեան ու յեղափոխութեան ոգին, այլ այդ պահանջում են քո տնտեսական, կուլտուրական և այլ շահերը։

Մենք վստահ ենք, որ Կովկասի բոլոր ազգերը, ի թիւս որոց և ռուս ազգաբնակութիւնը, ամեն բանից բարձր պիտի պահեն համերաշխութեան դրօշակը և պատւով պիտի առաջնորդեն նրան մինչև վերջին վայրկեանը։

Ով, ուրեմն, Կովկասի բոլոր եղբայր ժողովուրդներ, համաշխարհային մեծ պատերազմի, մարդկային պատմութեան մէջ աննախընթաց այս կրիտիքական օրերի և սպառնացող ահաւոր վտանգի առջև, ցոյց տուէք ձեր յեղափոխական ոգին, ձեր համերաշխ ու բարի դրացիութիւնը։

Թող գեղեցիկ Կովկասը միայ մաքուր եղբայրասպան կռւէ, միայ ազատ իր թանկագին ազատութեամբ, իր համերաշխութեամբ և յեղափոխական աննուաճ ոգիով, իբրև օրինակ ոչ միայն արիւնաթաթաւ Ռուսաստանին, այլև համուր աշխարհին...

Չը խաւարենք մեր երկնակամարի պայծառ արեգակը, չը մոխրացնենք մեր շէնն ու շէնլիքը, չը կործանենք դարերով ու մեծ զոհողութիւններով ստեղծուած մեր գեղեցիկ կուլտուրան։

Ահաւոր վտանգի առջև լինենք պաղարիւն, լինենք ըրջախոհ, համերաշխ և գիտակցենք մեր քաղաքացիական ու մարդկայնական պարտքը։

Այս է միակ փրկարար ճանապարհը...

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Կովկասի ֆրոնտը վտանգուած է զօրքի մեծագոյն մասի հեռանալու պատճառով։ Վտանգը սպառնում է համայն պետութեան, բովանդակ Կովկասին և Հայաստանի ու Կովկասի հայութեան։ Այս պատմական օրերին մեզ վիճակւում է մի համապետական, համակովկասեան և համազգային առաքելութիւն։ Ծանր է այս առաքելութիւնը, թերևս վեր մեր թոյլ ույժերից, բայց անխուսափելի է։

Ազգային Խորհուրդը յենւած հայութեան բոլոր խաւերի և մեր բոլոր գործօն կուսակցութիւնների վրայ՝ կոչ է անում համայն հայութեան, ուժերը լարած գործի անցնելու։

Կարգադրում ենք, որ հայ դասալիքները անմիջապէս մտնեն հայացած զօրամասերը։

Հրահանգում ենք, որ հայ մտաւորականները իրենց հմտութիւնն ու արուեստը տրամադրեն հայրենիքի պաշտպանութեան գործին։

Պատւիրում ենք ունևոր դասին դրամական առատ միջոցներ դնել Ազգային Խորհրդի տրամադրութեան տակ։

Եւ, առհասարակ, ամեն հայի առաջադրում ենք անտրտունջ կատարել Ազգային Խորհրդի կարգադրութիւնները։

Այս օրհասական վայրկեանին ամեն հայ, որ խուսափում է իր քաղաքացիական և ազգային պարտքը կատարել, դաւաճան է հայրենիքի և, իբրև դասալիք, արժանի է խստագոյն պատժի։

Հայոց Ազգային Խորհուրդ

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՐՊՈՒՍԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ ԱՌԱՋԻՆ ՀՐԱՄԱՆԸ

Դեկտեմբերի 14-ին

Երջանիկ եմ այն բարձր պատւով, որ ինձ վիճակուած է լինել հայկական նոր կազմուած առաջին կորպուսի հրամանատարը։

Յայտնում եմ իմ խորին շնորհակալութիւնը հայոց Ազգային Խորհրդին և հայ Զինւորական Միութեան, որոնք այդ ընտրութեամբ արժանացրին ինձ այդ բարձր պատւին և տածեցին դէպ ինձ այդպիսի վստահութիւն և բարեհաճ ուշադրութիւն։ Բարի ժամին, իմ թանկագին աշխատակիցներ—գործադրենք բոլոր ույժերը մեր թանկագին հայրենիքի հզօրութեան, վերածնութեան համար, յիշելով որ մեզ վրայ է ընկած կրկնակի պարտականութիւն՝ ապահովելու Ռուսաստանի սահմանները թշնամու ներս խուժումից, պաշտպանելու Հայաստանի սիրտը՝ հայի հարազատ արիւնաներկ երկիրը, որ հիւծուել է դարևոր թշնամիներից, իսկ մեր ներքին կեանքում պէտք է նեցուկ լինենք կարգ ու կանոնի և պաշտպան խաղաղ քաղաքացիների։

Արդէն ծագում է պայծառ նահատակ և բազմատանջ հայ ժողովրդի վաղուց յուսացած և ջերմօրէն սպասած Արշալոյսը։

Աստծուն ապաւինած համարձակ յառաջ դէպ մեր արդար և սրբազան գործը։

Կատարենք մինչև վերջ մեր պարտքը հայրենիքի և հայ ժողովրդի առաջ և թող պարզօրէն տեսնեն Ռուսաստանը և մեր

քաջարի ու հաւատարիմ դաշնակիցները, որ մենք արժանի ենք նրանց վստահութեանը։

Հայկական կորպուսի հրամանատար
գեներալ մայոր ՆԱԶԱՐԲԷԿՈՎ.

Այս հրամանը կարդալ բոլոր վաշտերում, բատարէաներում, պարկերում և կոմանդաներում։

---

# ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

1916 Թուի յունուարից, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհուրդը ձեռնարկեց իր օրգանի՝ «Համբաւաբեր»-ի հրատարակութեան։

Եւ այնուհետև մինչև ներկայ տարուայ Նոյեմբերի սկիզբը, շաբաթաթերթը կարողացաւ իր գոյութիւնը պահպանել։ Բայց պատերազմի և երկրի խառնակ դրութեան պատճառով ստեղծուած ծանր պայմանները, դրանց հետ կապուած նաև գրաշարի ու տպարանի հազուագիւտ լինելը, մանաւանդ հայկական զօրակոչի պատճառով շատ գրաշարների զինուորութեան ենթարկուելը այլևս հնարաւորութիւն չեն տալիս Ընկերութեան Կեդրոնական Խորհուրդին շարունակելու թերթը։ Թղթի, տպագրութեան և գրաշարի գները այն աստիճան թանգացել ու աւելացել են, որ անկարելի է առանց մեծ վնասի ոևէ լրագրի հրատարակութիւնը։ Խորհուրդը նկատի ունենալով այդ հանգամանքը, որոշեց առժամապէս, անորոշ ժամանակով դադարեցնել «Համբաւաբեր»-ը, մինչև որ ներկայումս տիրող ծանր պայմանները փոխուեն և հնարաւորութիւն լինի թերթերին շարունակել առանց վնասի իրենց գոյութիւնը։

«Համբաւաբեր»-ի առժամեայ դադարումը իրաւունք է տալիս խմբագրութեան մի քանի խօսքով ընդգծելու և պարզաբանելու թերթի մինչայժմեայ ուղղութիւնն ու կատարած դերը։

Ամենից առաջ Կովկասի Հայոց Բարեգործականի նման մի լայնածաւալ ու խոշոր ընկերութիւն, որ ճիւղեր ունի Անդրկովկասի համարեա թէ բոլոր հայաբնակ մասերում, անհրաժեշտ էր, որ ունենար իր սեփական օրգանը, իր պաշտօնաթերթը, որի մէջ մանրամասնօրէն արձանագրուէին Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի և գաւառական ճիւղերի գործերը։

Եւ իսկապէս «Համբաւաբեր»-ում, որքան ներում էր իր ծաւալն ու տարողութիւնը, մանրամասնօրէն արձանագրուել ու տպագրուել են կենտրոնի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները։

Դեռ աւելին՝ պատերազմի պատճառով տեղահանուած ու ջարդուած մեր Թիւրքահայ եղբայրների օգնութեան համար, Բարեգործական Ընկերութեան կից կազմուեցին զանազան մարմիններ ու մասնաժողովներ, Կենտրոնական Կոմիտէ, Պարենաւորման բաժանմունք, Որբանոցային յանձնաժողով և այլն։ Այդ բոլոր մարմինների ու կոմիտէների գործերն ու հաշուետուութիւնն ևս ժամանակագրական կարգով ու պարբերաբար տպագրուել են «Համբաւաբեր»-ում, որը ունեցել է յատուկ բաժիններ յատկապէս՝ գաղթականների պարենաւորման, որբանոցների, դպրոցների վերաբերեալ դրութիւնների ու տեղեկագիրների համար։

Դրանցից դուրս, «Համբաւաբեր»-ը ունեցել է իր յաւելեալ-թերթերը, ուր տպագրուել են որբերի թիւերը, նրանց ծննդավայրը, անունը, ազգանունն ևայլն։

Բայց «Համբաւաբեր»-ը միմիայն չի ամփոփուել լոկ Ընկերութեան պաշտօնական օրգանի դերում, նա ունեցել է նաև այլ բաժիններ՝ հասարակական, գրական, գիտական, քաղաքական և այլն։ Որտեղ մասնակցել և արտայայտուել են մեր հասարակական ու գրական մի շարք աչքի ընկնող ոյժեր ու դէմքեր։

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութիւնը լոկ կուլտուրական ու կրթական մի հաստատութիւն լինելով, անկուսակցական է, ուրեմն և նրա պաշտօնական օրգանն ևս բնականաբար անկուսակցական բնոյթ և արտայայտութիւն պիտի ունենար։ Եւ իսկապէս էլ թերթը դրուած է եղել սկզբից մինչև վերջը անկուսակցական հողի վրայ, ծառայել է հայութեան ընդհանուր շահերին, բազմակողմանի կերպով քննել ու վերլուծել է մեր հասարակական, գրական հարցերը։

Այն բոլոր խնդիրներն ու հարցերը, որոնք կապ ունին հայ ժողովրդի ճակատագրի, ֆիզիքական գոյութեան, մտաւոր ու կուլտուրական բարգաւաճման և գրականութեան հետ, անկողմնակալ ու բազմակողմանի քննութեան են ենթարկուել մեր թերթում և անցել նրա սառն դատողութեան ու քննադատութեան բովից։

Եթէ եղել են մանր մունր թերութիւններ ու սայթաքումներ, թերթի նպատակի և ուղղութեան ասպարէզում, եղել են լոկ պատահական պատճառներից. դրանք այնքան աննշան են եղել, որ երբէք աչքի չեն զարնուում և նիւթ չեն կարող ծառայել ոևէ քննադատութեան։

«Համբաւաբեր»-ը ունեցել է նաև մասնաւոր բաժիններ. համաշխարհային պատերազմ, քրոնիկոն, գաւառ, մատենախօսութիւն ևն.։ Համաշխարհային պատերազմի բաժնում պարբերաբար նկարագրուել ու արձանագրուել են ներկայ համաշխարհային պատերազմի անցքերը բոլոր ճակատամասերի վրայ։

Գաւառական բաժնում տեղ են տրուած գաւառից եկած թղթակցութիւններին, որոնց մէջ նկարագրուած է գաւառների կեանքը, ժողովրդի կուլտուրական ու տնտեսական կացութիւնը։

Քրոնիկոնի բաժնում պարբերաբար հաղորդուել են

բոլոր այն կարեւոր և անհրաժեշտ տեղեկութիւնները, որոնք վերաբերում են հայ ժողովրդի ազգային, հասարակական կեանքին։

Այսպիսով ուրեմն «Համբաւաբեր»-ը չամփոփւելով լոկ Ընկերութեան պաշտօնաթերթի հանգամանքում, ծառայել է ժողովրդի շահերին և լայն չափով տեղ տուել ու արձագանգ հանդիսացել բոլոր այն հարցերին, որոնք ժամանակի ընթացքում յուզել են հայութեան կեանքը։

«Համբաւաբեր»-ը տարածուել է ժողովրդի լայն խաւերում, ուղարկուել է գաւառական բոլոր դպրոցներին ու կուլտուրական միւս հաստատութիւններին անխտիր, ունեցել իր որոշ ընթերցողների դասը, որոնք ջանք չեն խնայել թերթի տարածման գործում։

Ներկայ ծանրագոյն հանգամանքներից ստիպուած լինելով դադրեցնել թերթի հրատարակութիւնը առժամայէս, մենք յոյս ունինք, որ ներկայ քաղաքական ծանր ու դժնդակ պայմանները անցնելուց յետոյ պիտի դարձեալ Ընկերութեան Խորհուրդը ձեռնարկի իր օրգանի վերահրատարակութեան։

# ԱՅԼԵՒՍ ՉԿԱՆ ՍԱԳԵՐԸ

Իմ նոր բնակարանս գտնւում էր Կուր գետի ափին։

Ամեն առաւօտ երբ բաց էի անում պատուհանիս փեղկերը, իմ առջև պատկերանում էր գետափնեայ կեանքը,—այնտեղ սայլապաններն էին բերում աղբը գետն ածում. փողոցի շներն էին գալիս նոր թափած աղբի մէջ ոսկորի կտորներ որոնում, աղաւնիների երամակներն էին իջնում աղբակոյտի գլխին ուտելիք պտրտում. աղքատ դասակարգի կանայք էին բերում իրենց լուացքն անում. ձկնորսներն էին իրենց ուռկաններով ու կարթերով ձուկը որսում. կառապաններն էին բերում իրենց ձիերը ջրում, լողացնում. գեղջուկներն էին բերում իրենց վաստակած եղն ու զոմէշը ջրում, հանգստացնում. խոզերն էին ափի տղմի մէջ թաւալ տալիս, կամ քթերը ցեխի մէջ կոխած ուտելիք որոնում... սակայն այդ ուրոյն կեանքի մէջ ինձ ամենից շատ հենում... սակայն այդ ուրոյն կեանքի մէջ ինձ ամենից շատ հետաքրքրողը սագերի այն մեծ երամն էր, որ ամեն առաւօտ ուրախ աղմուկով գալիս էր գետափ, փոքր զառիվայրից արագ-արագ թափւում ջուրը և այնտեղ, գլուխները բարձր պահած, աջ ու ահեակ մի տեսակ գոռոզութեամբ նայելով հպարտ-հպարտ ջրի երեսին սուրում էին ամեն ուղղութեամբ։

Սագերի մի մասը լողալուց յետոյ դուրս էր գալիս ցամաք, իրեն տալիս արևին, թաքանում կամ կտուցները փետուրների մէջ պահած քթիւ անում. միւս մասը գետի ծանծաղուտներում գլուխները ջրի տակն արած կերակուր էր փնտռում։

Մանուկ հովիւը, որ ամեն օր մօտակայ բնակարանից բերում էր նրանց գետափ, որոշ ժամանակից յետոյ, ձեռի փոքր ճիպոտը թափ տալով, նշան էր անում սագերին ջրից դուրս գալու։ Սակայն ջրասէր թռչունները այնքան էլ հաճոյքով ջրից չէին դուրս գալիս. այն ժամանակ մանուկը հանում էր գրպանից մի բուռը կուտ, գցում գետին. մօտ եղող սագերն իսկոյն յարձակւում էին նրա վրայ, նրանց հետևում էին միւսները, ապա ամենից հեռու գտնուողները. մանուկը քիչ շարժւում էր առաջ՝ գցում երկրորդ բուռ կուտը. և երբ բոլոր սագերը ջրից դուրս էին եկած լինում՝ նա անցնում էր նրանց առաջ և քշում դէպի գետափնեայ տափարակը։

Այն փոքրիկ զառիվերը, որ ձգւում էր տափարակի և գետի միջև՝ բաւականին թեք էր. սագերն այդ տեղով բարձրանալու համար դիմում էին իրենց կռնների օգնութեան. նրանք, ինչպէս բազմաթիւ հովանոցներ, պարզում էին իրենց սպիտակ թևերը, մի քանի անգամ թափահարում, ղժղժ անելով, աճապարանքով բարձրանում վեր։

Այնտեղ, տափարակում, սագերի երամն ընդունում էր մի կիտուած տեսարան. իրար սեղմուած մարմինների մէջ, ինչպէս զինուորների սուիններ, դուրս էին ցցւում նրանց հազարաւոր գլուխները իրենց կարմիր կտուցներով։

Մանուկ հովիւը այստեղ կերակուր էր տալիս նրանց. այդ ժամանակ իսկոյն փոխւում էր սագերի երամի ձևը. հազարաւոր գլուխները մի վայրկեանում չքանում էին ներքև, և արևի պայծառ ճառագայթների տակ փայլում էին նրանց ճեփ-ճերմակ մարմինները։

Երբ կերը վերջանում էր՝ մանուկ հովիւը դարձեալ մի երկու բուռ կուտ էր գցում նրանց առաջ և կանչում դէպի այն տնակը, որտեղ սագերի բոյնն էր, Այստեղ, գնալիս, սագերի երամն ընդունում էր կարաւանի ձև, իրար ետևից շարուած, վզերն առաջ երկարացրած, օրօրուն, մի տեսակ նազանի քայլուածքով ընթանում էին առաջ, այս անգամ կասես ցուցադրելով իրենց կարմիր տոտիկները։

Ես գիտէի այն ժամը, երբ սագերի երամը ամեն առաւօտ դուրս էր գալիս գետափ իր ուրախ ղաղայով, մօտենում էի պատուհանիս, բաց անում նրա փեղկերը, երկար, շատ երկար դիտում այդ գրաւիչ տեսարանը։

Չէր անցել մի քանի օր, որ ես յանկարծ նկատեցի սագերի երամի զգալի քչանալը։ Այդ երևոյթը իմ վրայ խիստ ճնշող տպաւորութիւն գործեց։

Մի կիրակի օր, երբ նորից լսեցի սագերի՝ այս անգամ համեմատօրէն աւելի թոյլ ղա-ղան, մօտեցայ պատուհանիս նրանց դիտելու. աւաղ, այն ահագին երամից հազիւ մնացել էր հարիւր սագ։

Այդ երամակն ինձ այնքան ողորմելի թուաց, այնքան իր հաճոյքն ու վայելքը կորցրած, որ կասես որբերի մի խմբակ լինէր, Ես ճնշուած սրտով երեսս շուռ տուի միւս կողմ, որ այլ ևս չտեսնեմ այդ ծանր երևոյթը։

Հետևեալ օրը աշնանային արևի ճառագայթներից օգտուելու համար վերցրի աթոռս և նստեցի պատուհանիս առաջ, ու դարձեալ սկսեցի դիտել գետափնեայ իւրատեսակ կեանքը։

Այնտեղ ամենօրեայ սովորական կեանքը կար, բայց այլևս չկային սագերը։

Նրանք բոլորը, բոլորը դանակին զոհ էին գնացել։

Յովհ. Մալխասեան

# Գեղարուեստ

* * *

Աստղերը ժպտում են երկնքից,
Ցոլքերը շողշողում ջրերում.
—Գերել է իմ հոգին քո երգից
Այս գարնան ծաղկազարդ օրերում։

Վարդերը մեղմօրօր, սիրասուն
Բուրում են հովի հետ միասին,
—Ցանգերգով հասկերը գեղասուն
Քեզ են միշտ օրհներգում, իմ անգին...

Տիգրան Տէրունի

## ՊԱՏԿԵՐԻԴ ԱՌՋԵՒ

Կանգնած եմ մոլոր պատկերիդ առջև,
Անթարթ աչերիդ դիւթական ծովում.
Ուրւական ես դու, մի անշարժ տերև,
Մի լուռ հոգեհան հմայքի ծոցում...

Ժպտում են նազով աչերդ սրտիս,
Դիւթում իմ հոգուն կարօտներ ու լաց.
Հին-հին յուշերի կարաւանն է գալիս,
Նոր կարօտների վայելքով բարձած...

Մարում եմ գողով լոյսերը արծաթ,
Պարում են իմ քով չարքեր ու դևեր,—
Դրկում եմ մութում պատկերդ անթարթ,
Արցունքով թրջում ճերմակ ու սևեր...

Գառնիկ Ղազարեան

# ԳՐԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Բաղաքական ու հասարակական կեանքի ներկայ խառնափնթոր ու վայրիվերոյ վիճակը աննպաստ պայմանների մէջ է դրել գրականութիւնն ու գեղարուեստը։

Տնտեսական տագնապը, եռուզեռը, հոգեկան աննորմալ ու աններդաշնակ դրութիւնը, սուրն ու արիւնը մի մի խոչընդոտներ ստեղծագործական աշխատանքի, որ խաղաղ ու անդորր նքի միայն յատուկ է։

Ահա թէ ինչու պատերազմի այս քառամեայ ժամանականում, հայ գրականութիւնը, հայ մտքի ու գրչի գեղեցիկ մնաց թոյլ ու տարտամ, չտուեց ուժեղ և տպաւորիչ ար-ութիւններ։

Թէ մենք բնորոշելու լինենք անցնող տարուայ հայ գրա-նքը, պիտի տեսնենք, որ համեմատած պատերազմի եշրջաններին՝ աւելի բեղմնաւոր ու խոստմնալից ե-

չանակալից երևոյթը մենք բացատրում ենք նրանով, որ պատերազմի հենց սկզբին հայ ժողովուրդը գտնւում էր անօրինակ ոգևորութեան մէջ։

Մի կողմից կամաւորական գնդերի արշաւանքը և նրանց հետ կապուած մեծամեծ յոյսերն ու ակնկալութիւնները, միւս կողմից Տաճկահայաստանի շուրջ մեր կազմած հիասքանչ երազները, հայ ժողովրդի ամբողջ ուշադրութիւնը կենտրոնացրել էին իրենց վրայ։ Ոգևորութիւնն ու եռուզեռը այն աստիճան կլանած էր հայ ժողովրդի մտաւորական ույժերը, որ այլևս գրականութեան, արուեստի մասին խօսք անգամ լինել չէր կարող։

Այլևս հրապարակը մնացել էր կոչերին, կռիւների նկարագրութիւններին, հերոսամարտերի արձանագրութիւններին և այդպիսի լրագրութեանը, որ ժողովրդի կողմից կարդացւում ու իւրացնում էր մեծ հետաքրքրութեամբ։

Պատերազմի առաջանալու հետ, սակայն, կամաց կամաց իջաւ ու ցամքեց հայ ժողովրդի ոգևորութիւնը։ Հայ ազգի ոսկի ակնկալութիւնները ռուսական ցարիզմի նենգ ու զազիր ճիրանների պատճառով մեծ չափով օդը ցնդեցին։

Տաճկահայ մեր եղբայրները ենթարկուեցին դեռևս չտեսնուած մի արհաւիրքի, մեծ մասով կոտորուեցին, աքսորուեցին ու զոհ գնացին սաճիկ կառավարութեան բարբարոս բնազդներին։

Կովկաս թափուեցան մեր եղբայրների ծուատուած ու արիւնլուայ բեկորները, նիւթական ու բարոյական ամենածանր պայմաններում։

Այս պատճառներով էլ սկսուած ծայր աստիճան ոգևորութիւնը նոյն արագութեամբ տխրութեան ու հիասթափութեան փոխուեց։ Կամաւորական գնդերը մէկը միւսի ետևից լուծուեցին։ Հայ ժողովուրդը անսպասելի աղէտից ծւատուած ու արիւնլուայ, մեծ ֆիասկոյի ենթարկուեց։ Այլևս ինկան ոգևորութեան մեծ թևիչքները, նրանց փոխարինեցին այլ արժէքներ ու ձգտումներ։

Հայ ժողովուրդը պատերազմի արհաւիրքներից, տնտեսական ու քաղաքական ծանր հարուածներից ուժասպառ, մի պահ ամփոփուեց և աշխատեց իր վէրքերը բուժել։

1917 թուականը մեծամասնաբար հայ ժողովրդի ինքնամփոփման ու հիասթափութեան շրջանն է կազմում։ Ահա թէ ինչու այդ շրջանին գրականութիւնն ու արուեստը որոշ քայլեր ու յառաջացումներ արին։

Այդ թուականին Բագւում սկսեց հրատարակուել «Գործ» գրական, գիտական, քաղաքական ամսագիրը, ընդարձակ ծաւալով և նիւթական աննախընթաց միջոցներով։ «Մուրճ»-ից ու «Նոր-Հոսանք»-ից յետոյ, երկար ժամանակ չունէինք մի լուրջ ու հաստատուն պարբերագիր։

Հայ գրականութեան արտադրութիւնները և մանաւանդ նոր ու թարմ գրողների գեղարուեստական երկերը կամ մնում էին անտիպ և կամ հրատարակւում էին պատահաբար լոյս տեսնող այս կամ այն ժողովածուի մէջ և օրաթերթերում։

Հայ գրականութիւնը չունէր իւր արտայայտիչ կենտրոնական օջախը, մի լուրջ օրգան, որտեղ տպագրուէին ու երևան գային գեղեցիկ երկերը։

Եւ ահա «Գործ» ամսագիրը եկաւ գոցելու այդ խոշոր բացը։ Մինչև այժմ լոյս տեսած «Գործ»-ի համարները ցոյց են տալիս, որ թերթը մի շատ լուրջ ու աննախընթաց ամսագիր է, ուր արտայայտուել են թէ ռուսահայ և թէ տաճկահայ համարեա բոլոր յայտնի գրողները։ Այնտեղ արտայայտուել են նաև մի շարք երիտասարդ ույժեր, որոնք հետզհետէ ցոյց են տուել իրենց գեղեցիկ շնորհը։

«Գործ»-ի գրական բաժինը եղել է հարուստ, որքան ների են ներկայ պատերազմական ու տնտեսական ծանր պայմանները։ Գրական բաժնում տպագրուած են մի քանի ինքնուրոյն ու թարգմանական խոշոր երկեր, որոնց մասին դժբախտաբար լրագրական էջերը հնարաւորութիւն չեն տալիս երկար ու հանգամանօրէն կանգ առնելու։

Նոյնպէս հարուստ ու բազմակողմանի է եղած «Գործ»-ի միւս բաժինները, ուր զետեղուել են մեր հասարակական ու գիտական ասպարիզում աչքի ընկնող ուժերի գրչի արդիւնքները։

1917 թւի հայ գրականութիւնը գրեթէ ամփոփուել է «Գործ» ամսագրի շուրջ, որի հրատարակիչներն ու խմբագիրները, հակառակ տիրող նիւթական ու բարոյական դժնդակ պայմանների, զարմանալի յամառութեամբ և հայկական տոկունութեամբ շարունակում են ամսագիրը և գուցէ էլ աւելի շարունակեն աւելի և աւելի դարձնելով թերթը բազմակողմանի, հարուստ և հետաքրքրական։

1917 թւականին լոյս է տեսել նաև սկսնակ գրողների գրական-գեղարուեստական «Պատանի» ալմանախը։ Այդ ալմանախը, որ մի քանի տարինների կեանք ունի, թէև չի տւել մի շօշափելի արդիւնք, չի տւել ուշադրութեան արժանի մի արժէքաւոր գրական արտադրութիւն, բայց այնուամենայնիւ ողջունելու է այն ոգևորութիւնն ու աշխուժութիւնը, որ գոյութիւն ունի Ալմանախը խմբագրող սկսնակ ոյժերի մօտ։ Խմբագրողների մի գեղեցիկ ձեռնարկութիւն է կազմում Միքայէլ Մանուէլեանի երկերի ժողովածու» գիրքը, որ հրատարակւեց սրանից մօտ մի երկու ամիս առաջ։

Նոր տարեշրջանը սակայն սկսած է գրականութեան համար շատ աննպաստ հեռանկարով։ Նորից հայութիւնը սկսել է յուզուել ու ջղագարուել, այս անգամ ոչ թէ քաղաքական ակընկալութիւններով ու մեծամեծ յոյսերով, այլ լինել չլինելու անորոշ հարցով։

Այժմ Հայութիւնը կանգնած է մի անդունդի ծայրին և ֆիզիքական բնաջնջման ճանապարհին։ Այժմ գրականութիւնն ու արուեստը, ինչպէս նաև կուլտուրական միւս արժէքները՝ երկրորդական նշանակութիւն են ստացել։

Ցամենայն դէպս հայ ցեղի ֆիզիքական վտանգի ամենածանր պահին նոյն իսկ չիմեռնում նրա ստեղծագործական ոյժը. նրա հանճարը անմեռ է և յաւէտ։

Նոր տարուայ նախօրեակին ահա, լոյս է տեսնում մի նոր ու խոստմնալից գրական- գեղարուեստական ժողովածու «Հրազդան» անունով։ Սա էլ մի նոր և հզօր փաստ է հանդիսանում Հայ ցեղի անսպառ ուժին ու կուլտուրական բարձր ու զօրաւոր հակումներին։

Այդ հակումները մանաւանդ անսպառ են Հայաստանից եկած տարագիր ժողովրդի մէջ, որի երակներից հոսում է մեր ժողովրդի ամենից մաքուր ու ամենից կարմիր արիւնը։

Ողջունելով նոր ժողովածուի՝ «Հրազդանի» ասպարէզ գալը, նրանով էլ փակում ենք մեր այս թռուցիկ ու համառօտ գրական տեսութիւնը։

X

---

## ՆԵՐԿԱՅ ՕՐԵՐՈՒՆ ԿՈՎԿԱՍԵԱՆ ԱԶԳԵՐՈՒ ՊԱՐՏՔԸ

Ցեղափոխական երկրի մը ամենէն սուր և ամենէն յատկանշական օրերը կապրի Ռուսիան։ Շէնք չնորհք . անիշխանական վիճակի մէջ է երկիրը, ամբողջ Ռուսիոյ մէջ 6—7 հաստատութիւններ բուսած են, որոնք «կառավարութիւն» կանուանեն ինքզինքնին, ասոնց մէջ կան որ ինքզինքնին բոլոր Ռուսիոյ իշխանութիւնը կը հռչակեն, կան ալ որ Ռուսաստանի ո և է մէկ մասին փաստօրէն անկախ կառավարութիւնը։

Կենտրոնական իշխանութիւնը որու ձեռքն ալ անցնի, իր յարատեւութեան և գոյութեան միակ պայմանն է կառավարողական ոյժ և կարողութիւն մէջտեղ բերել, երկիրը, ժողովուրդը, որ մտածէ կառավարական տարրերու մասին, միակ բան մը կը փնտռէ ամէն պարագայի մէջ, և տիրկա կառավարութեան մը գոյութեան շօշափելի փաստն է—ապահովութիւն։

Ամենաիդէալիստ դարձած ժողովուրդն անգամ կը վախնայ անստոյգ, լռանգաւոր դրութենէն և կարող է մղուել դարձեալ դէպի սովորական օրերը, որոնք իր տխտաւորուած ուղեղին, անցած գացած նեղութիւններու սովորական սպիացումով, կթուին նուազ ծանր և աւելի տանելի։

Պատմութիւնը այդ դասը կուտայ և պէտք չէ մղել ժողովուրդ մը դէպի այդ անկումն ու ուժերու սպառումը, անոր համար գոցելով էվոլիւսիոնի ճամբան և գլխապտոյտ արագութեամբ դէպքերու և յուզումներու յաջորդականութեան մը յոգնութիւնը պարտադրելով անոր։

Ինչ որ ալ ըլլայ, փաստը սա է որ Ռուսիան այսօր պէտք ունի զօրեղ իշխանութեան։

Պէտք է ի նկատի առնել այս քիչ ուսումնասիրուած երկրին ինքնուրոյն պայմանները։

Ինչ կը ներկայացնեն անոնք։

Արտասահմանի մէջ կրթուած և հոնկէ խւրացուած դասակարգութեամբ բարձր մտաւորականութիւն մը, էլիթ մը, [illegible]նց ուղղութեամբ, երկրին մէջ դաստիարակուած երիտասարդութիւն, որոնք կը կազմեն փոքրիկ և ժողովուրդէն շատ մեկուսացած (գիտական իմաստով) տարր մը, և միւս կողմէն ժողովուրդը, բուն Ռուսաստանի իսկական պատկերը, հարազատ, որ ուրիշ բան չէ՝ եթէ ոչ Բիւզանդական ֆանատիկոսութիւններու կիսակիրթ և ասիական միջավայրի ծնունդ և խառնուրդ մը։ Արդէն Ռուսաստանի մեծագոյն տոկոսը գիւղացութիւնն է, որ քաղաքակրթական ընդունակութեան մեծ ապդակ մը չէ ապահովարար…։

Ռուսական երկրի այս պատկերին վրայ աւելցուցէք ազգերու, տարրերու և բարքերու այլազանութիւնը և կրնաք երևակայել թէ որքան ծանր խաղ է յեղափոխական հատուածներու խաղը, որ տեղի կունենայ այս միջավայրին մէջ…։

Գալով Կովկասին, հոս խնդիրը չափազանց լրջութիւն ' պզուշութիւն կը պահանջէ, քանի որ այստեղ թիւրիմացութիւնները շատ շուտով կրնան քաղաքացիական բաղխումներէ ա' աւելի վտանգաւոր հողերու վրայ։

Կովկասը, բազմացեղ, այլազան և քրոնիկանալու ե[illegible] զող շատ մը չի լուծուած վէճերովը շատ տխուր [illegible] կը ներկայացնէ։

Մեզ համար հետաքրքրական էր, թէ ինչ [illegible] դեօք այս օրերուն, Կովկասի համեմատաբա[illegible] ցեղային և ուրիշ շատ մը առանձնայատ[illegible] կապուած երկու քոյր ազգերը, հայերն [illegible]

անոնք կը շարունակեն կայծոտ մոխրի վրայ նստիլ, բանակռիւ մղել երբեմն իրարու հետ անիմաստ ու անհիմնաւոր խնդիրներու շուրջ, որոնք հիւանդոտ սովորութիւն մըն են դարձեր, չեմ գիտեր որ սև բաղդէն ի վեր, այդ երկու ազգերուն միջև, թէ չէ անոնք զգալով իրենց առաքելութիւնը և քաղաքակրթական մեծ դերը Առաջաւոր Ասիոյ ու Կովկասի մէջ, ձեռք ձեռքի պիտի տան իրենց հայրենիքներուն ու զիրենք շրջապատող ժողովուրդներու քաղաքակրթման և երջանկութեան համար։

Պէտք է որ այս քաղաքակրթական առաքելութիւնը և եղբայրակցութիւնը զգան երկու քոյր ժողովուրդները, պէտք է որ սրտուղից և անկեղծ միութեամբ մը ձեռք կարկառեն իրարու, փրկելու համար Կովկասի մէջ Ռուս. մեծ յեղափոխ. ձեռք բերած բարիքները։

Այս նեղ օրերը անցունելու համար, երկու ազգերը համերաշխութեամբ Կովկ. այլացեղ տարրերու հետ պէտք է փրկարար դեր կատարեն նախ փրկելու իրենց հայրենիքը մեծ աղէտներէ և ոյժգինով աննկուն սատար հանդիսանալով Ռուսական մեծ երկրին, անոր այս տագնապալից ոգեվարումներու առեն։

Մարդիկ կարող են ձգտումներու, վարչակերպերու, քաղաքական նախասիրութիւններու ինքնայատուկ ըմբռնումներ ունենալ, բայց միևնոյն ատեն կրնան և պարտաւոր են իրար օգնելու, ընդհանուրի երջանկութեան, ընդհանուրի ապահովութեան և մանաւանդ աշխարհի ոսկէ մասի մէջ Սէր կոչուած սրբազան զգացումը տարածելու և ժողովուրդները իրար եղբայրացնելու գործին մէջ։

Լ. Թիւթիւնճեան

## ՄԱՍՆԱՒՈՐ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

«Համբաւաբերի» 22 րդ համարում տպագրել է մի փոքրիկ գրութիւն Մանչեստրի հայկական գաղութի և այնտեղ գործող պ. Մանաշեանի գործունէութեան մասին։

Այժմ Մանչեստրի առաջնորդ Գէորգ արքեպիսկոպոսը, Ամ. Հայոց Կաթուղիկոսին ուղղուած մի գրութեամբ յայտարարում է, որ Մանչեստրում պ. Մանաշեանը անհատապէս է գործում, որ այնտեղի հայ գաղութը ժողով գումարելով կենտր. մի յանձնաժողով է կազմած, որը իր հերթին յաջողել է Մանչեստրի լորդ-քաղաքապետի նախագահութեամբ, Անգլիացի նշանաւոր գործիչներից մի մարմին կազմել։

Լորդ-քաղաքապետի մարմինը հայկ. յանձնաժողովի հետ միասին՝ մեծ աշխատանք է թափել, հանգանակելով 8200 ստերլինգ փող և գաղթականների համար մեծ քանակութեամբ շորեղէն։

Գէորգ արքեպիսկ. հաղորդում է նաև, որ Մանչեստրի տեղական հայութիւնը մեծ ոգևորութիւն է ցոյց տալիս և աշխատում է եռանդով։ Իսկ պ. Մանաշեանի ձեռնարկը լոկ անհատական բնոյթ ունի և կապ չունի ընդհանուր գործի հետ։

Տպելով այս տեղեկութիւնը, պարտք ենք համարում նախ ... որ աւելորդ չկայ թէ պ. Մանաշեանի անհատական գործու- ... ձուլուած լինէր յանձնաժողովին։ Երկրորդ՝ պ. Մանաշ- ...թիւններից երևում է, որ ինքը միայն չի գործում, ...մբի հետ։ Երրորդ՝ որ մենք անընդհատ ստացել ...ղթական որբերի համար միմիայն պ. Մանաշ- ...ացած գումարի մասին Հ. Կ. Կոմիտէին տե- ...րկել է ստացագիր։ Եւ վերջապէս, վերո յիշեալ յանձնաժողովի գոյութեան և գործունէութեան մասին՝ մասնակցութեամբ Գէորգ արքեպիսկոպոսի, մենք մինչև օրս ոչ մի տեղեկութիւն չենք ունեցել։

## Քրօնիկոն

Ազգային Խորհուրդի 1917 թ. դեկտ. 26-ի որոշումներից.— Նկատելով, որ Ազգային Խորհուրդը հանդիսանում է միակ գերագոյն մարմինը համայն Ռուսաստանի հայութեան՝ յանուն ազգի հայ ժողովրդին կոչեր ուղղելու և Նրա վերաբերմամբ պարտադիր որոշումներ կայացնելու և հրապարակելու իրաւունքը վերապահուած է միմիայն Ազգային Խորհրդին։ Այդ օրինակ անջատ քայլերը կանխելու համար Խորհրդի այս որոշումը յայտարարել ի գիտութիւն հանրութեան։

— Երզնկայից ստացուած ստոյգ հեռագրից երևում է, որ դեկտ. 23-ին քրդերը գրաւել են Բէլումէր, Սաթար և Թիլք գիւղերը, որոնք առաջ ռուս զօրքի ձեռքին էին։

— Հեռագրով հաղորդում են Երևանից, որ աւազակները յարձակուել են Խորվիրապի վրայ և կողոպտել վանքը։

— Եւլախ-Շուշի ճանապարհը կտրուած է։ Համարեա ամեն օր սպանութիւններ ու թալաններ են տեղի ունենում։

—Ժողովրդական կոմիսարների Խորհրդի կողմից նշանակուած Սահմանադիր Ժողովի կոմիսար Ուրիցկին պաշտօնապէս հեռագրում է, որ Սահմանադիր Ժողովի բացումը տեղի է ունենալու Պետրոգրադում յուն. 5-ին ընտրուած պատգամաւորները հրաւիրւում են այդ օրը ներկայ լինելու նիստին։

Անդրկովկասեան շրջանների ընտրութեան արդիւնքը դեռ յայտնի չէ։ Վերջնական տեղեկութիւնները չեն ստացուել Թիֆլիսի, Բագուի, Գանձակի և Երևանի նահանգներից։ Բանակից պատգամաւոր են ընտրուած 5 սոց. յեղափոխական և մի բոլշեւիկ։ Հաւանական ընտրելիները երեք կստանան մանդատ, և նրանց մի մասը կը մեկնի Պետրոգրադ։

—Անդրկովկասի Կոմիսարիատը մշակում է պարտադիր զօրակոչի դեկրետ, ըստ որի յուն. 10-ին զէնքի են կանչւելու բոլոր նրանք, որոնք 19 տարին լրացնում են յունուարին։

Խմբագիր՝ Սամսոն Յարութիւնեան

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկ.

## Յայտարարութիւններ





Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1